Վ. ԱՅԳԵԿՑԻ

# ԱՌԱԿՆԵՐ

«ՀԱՅԱՍՏԱՆ» ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1972

# ԳՈՂ ՔԱՀԱՆԱ ԵՎ ԱՅՐԻ ԿԻՆ

Մի քահանա գողացավ այրի կնոջ կովը և ախոռը կապեց: Եվ կինն իմացավ և քահանային ասաց. „Տեր հայր, հասավ իմ մահվան ժամը. գնանք ախոռ, որ խոստովանեմ մեղքերս»: Եվ այն ժամանակ քահանան կովը տարավ ներսի տուն, այնտեղից ժամատուն և այնտեղից եկեղեցի: Եվ կինն ասաց. «Տեր հայր, վերջին խոստովանությունը մահից առաջ պետք է անել եկեղեցում»: Եվ քահանան կովը բեմ բարձրացրեց և վարագույրը քաշեց նրա վրա: Երբ նրանք եկեղեցի մտան և նստեցին, այն ժամանակ կինը բարձրացրեց վարագույրը և կովին ասաց.

«Ո՛վ զարշելի, ես քեզ կով գիտեի և այժմ քեզ ո՞վ արեց պատարագիչ, ասա ինձ»:

# ՀԱԼԱԼ ՄԱՐԴ

Մի երիտասարդ ուխտել էր հարամ բան ամենևին չուտել և մի օր նա գնաց գետի եզրը և տեսավ, որ ջուրը մի խնձոր է բերում: Երիտասարդն առավ խնձորը, կերավ անոթի, ապա միտն ընկավ իր ուխտն և խղճմտանքով գնաց գետն ի վեր, գտավ մի այգի և իմացավ, որ խնձորն այդ այգուց էր: Երիտասարդն ասաց այգետիրոջ. «Ողորմիր ինձ և առ խնձորի գինը կամ հալալ արա, որովհետև ես հարամ բան ամենևին չեմ կերել»: Եվ բուրաստանի տերն ասաց. «Կեսը, որ իմն է հալալ քեզ և կեսը՝ իմ եղբորն է, նրան տեր չեմ: Եվ իմ եղբայրը հեռու է այստեղից վեց օրվա ճանապարհ»: Եվ երիտասարդը ճանապարհ ընկավ և գտավ այն մարդուն, ասաց. «Կամ առ քո կես խնձորի գինը և կամ հալալ արա ինձ»: Եվ մարդն ասաց. «Ոչ գինը կառնեմ ու ոչ հալալ կանեմ: Թե կուզես որ հալալ անեմ, ես մի աղջիկ ունեմ՝ որ ոչ ականջ ունի և ոչ էլ լեզու և ոչ ձեռք և ոչ ոտք, նրան կին առ, որ հալալ անեմ»:

Երիտասարդն անճարացած առավ այդ աղջըկան և երբ առագաստ մտան, տեսավ, որ աղջիկը

ամենևին առողջ էր: Եվ երիտասարդն աներոջն ասաց «Ինչո՞ւ էիր ծաղրում քո աղջկան»: Եվ նա ասաց. «Ես ճշմարիտ էի, որովհետև ծնված օրից իմ աղջիկը արեգակի լույսը երբից է տեսել և օտար մարդու ձայն չի լսել և օտարի հետ չի խոսել և ձեռքով մեղք չի շոշափել և ոտքը դռնից դուրս չի դրել: Եվ ես նման հալալ մարդ էի ուզում և ահա դու եկար»:

## ԱՂՔԱՏ ԵՎ ԱՎԵՏԱՐԱՆ

Մի աղքատ մի գյուղ եկավ ու մտավ գյուղի եկեղեցին, որ խարխուլ էր և անձրևակեղ: Եվ այն աղքատը անձրևաթաց էր և քաղցած և հագել էր պատառոտում պգեստ և դողում էր և հոգնել էր ճանապարհից: Եվ ներս մտավ քահանան, սկսեց ժամ ասել: Առավ ավետարանը և կարդաց այն էջը, ուր գրված էր, թե օտարական էի՝ ընդունեցիք ինձ, մերկ էի՝ հագցրիք ինձ, քաղցած էի՝ կերակրեցիք ինձ, ծարավ էի՝ հագեցրիք ինձ: Այն աղքատը լսեց և ուրախացավ. «Այս ինձ համար է ասված և անհա շուտով կկատարեն իմ կամքը»: Իսկ քահանան ժամն արձակեց և գնաց տուն և աղքատին թողեց եկեղեցու մեջ և հոգ չտարավ նրա մասին: Եվ աղքատն ասաց. «Այն գիրն, որ կարդաց, նա սուտ էր»: Եվ առավ ավետարանը, վրան քար դրեց և սուզեց ջրի մեջ: Եվ քահանան եկեղեցի գալով ավետարանը չգտավ և աղքատին ասաց. «Ո՞ւր է ավետարանը»: Եվ աղքատն ասաց քահանային. «Ի՞նչ ես անում սուտ ավետարանը, ու ես տարա ջուրը գցեցի»: Եվ քահանան բարկանալով սկսեց ծեծել

աղքատին և աղքատն ասաց. «Ինչո՞ւ ես ծեծում ինձ, անիրավ. եթե հավատում ես, թե ավետարանն աստծու ճշմարիտ խոսքն է, ապա ինչու չես կատարում նրա կամքը: Որովհետև ես օտարական եմ և ինձ չեք ընդունում, մերկ եմ և ինձ չեք հագցնում, քաղցած եմ և չեք կերակրում ինձ, ծարավ եմ, ջուր չեք տալիս: Մի՞թե աստված այդ բաների պակասություն ուներ և այդ ամենն իրեն համար ասաց»:

## ԿԱԹ ՄԵՂՐԻ ՊԱՏՃԱՌ ՊԱՏԵՐԱԶՄԻ

Մի մարդ խանութ ուներ և մեղր էր ծախում և մեղրից մի կաթ կաթեց գետնին և մի պիծակ նստեց կաթի վրա և կատուն վազեց և պիծակին առավ և նրանից հետո շունը վազեց և կատվին առավ և խանութի տերը շանը վարկեց և սպանեց: Եվ այն գյուղին դրացի մի գյուղ կար և շունն այդ գյուղից էր: Երբ շան տերը իմացավ, թե խանութպանն սպանել է յուր շանը, այն ժամանակ եկավ և սպանեց խանութպանին: Հետո երկու կողմից վեր կացան գյուղացիք և միմյանց հետ պատերազմ արին և նրանց միջև կոտորած եղավ և երկու կողմից կենդանի մնաց մի մարդ՝ մի կաթ մեղրի համար:

# ԱՌՅՈՒԾ ԵՎ ԱՂՎԵՍ ԵՎ ԱՐՋ

Առյուծն հիվանդացավ և ամեն կենդանիներ եկան նրան տեսության. միայն աղվեսն ուշացավ: Արջը չարախոսեց նրան և աղվեսն դռնամտից լսեց և ներս ընկնելով թավալվեց առյուծի առաջ: Առյուծն ասաց աղվեսին. «Բարի ժամի չեկար, զարշելի, ասա ինձ, ինչո՞ւ ուշացար»: Աղվեսն ասաց. «Մի բարկանար, բարի թագավոր, երդվում եմ քո գլխով, որ քո առողջության համար այցելեցի շատ բժշկապետների և մեծ չարչարանք քաշեցի, բայց իմացա դեղը քո բժշկության»: Եվ առյուծն ասաց. «Բարի եկար, իմաստուն կենդանի, ի՞նչն է այդ դեղը»: Աղվեսն ասաց. «Խիստ պիտանի է և դյուրին. բժշկապետներն ասացին, թե կենդանի հանեք արջի մորթին և տաք-տաք գցեք առյուծի վրա և իսկույն մորթին ցավը կհանի հիվանդից»: Եվ առյուծը հրամայեց. արջին բռնեցին և սկսեցին հանել մորթին: Իսկ նա վայում էր և արձակում մեծամեծ ոռնոց:

Եվ աղվեսն ասաց. «Այդ ամենը քեզ և նրան, ով արքունիք մտնելով կչարախոսի մեկին»:

## ԻՇԽԱՆ ԵՎ ԱՅՐԻ ԿԻՆ

Մի իշխան կար խիստ չար և անիրավ: Եվ նույն քաղաքում ապրում էր մի այրի կին և իշխանը հարկ պահանջելով նեղում էր նրան և այրի կինն աղոթում էր, որ իշխանն ունենա խաղաղ ու երկար կյանք: Գնացին ասացին իշխանին, թե քո չարության համար աղոթում է այրին: Եվ իշխանը եկավ և ասաց. «Ես քեզ բարիք չեմ արել, ով կին, դու ինձ համար ինչո՞ւ ես աղոթում»:

Այրի կինն ասաց. «Քո հայրը վատ մարդ էր. ես անիծեցի և նա մեռավ: Դու նստեցիր նրա տեղը՝ ավելի խիստ չար: Եվ այժմ վախենում եմ, որ մեռնես և քո որդին քեզնից ավելի չար լինի»:

## ՄԻԱՅՆԱԿՅԱՑ ԵՎ ԳԱՄՓՌ ՇՈՒՆ

Մի միայնակյաց բնակվում էր մի գյուղի մոտ և գյուղում նա սիրեց մի աղջիկ և բազում ժամանակ նրա հետ շնանում էր պոռնկությամբ: Եվ գյուղի տանուտերն ուներ մի գամփռ շուն, որ խիստ պահող շուն էր և ամբողջ գյուղը պահում էր: Մի գիշեր միայնակյացն եկավ, որ շնանա այն կնոջ հետ և գյուղի եզրին նրան հանդիպեց տանուտերի շունը և գամփռեց նրա վրա և նրան կծեց և արյունը ճապաղ արեց և շատ վերքեր արեց և նեղելով նրան քշեց: Եվ միայնակյացը լալով և արյունաթաթախ մտավ խուցը և դուռը փակեց, կղպեց և չոքեց աղոթքի, լաց եղավ և կուրծքը ծեծելով ասաց. «Աստված, բազում ժամանակ է, որ շնացա և չվախեցա քո դատաստանից և ոչ դառն դժոխքից զարհուրեցի, բայց այս գիշեր զարհուրեցի մի գամփռ շնից և չկարողացա շնություն անել»:

## ԱՅՐԻ ԿԻՆ ԵՎ ՈՐԴԻ

Մի այրի կին ուներ տասը այծ և մի որդի: Եվ ամեն օր որդին այծերը տանում էր արոտ և մայրն ամեն օր մի չերեփ ջուր էր լցնում կաթի մեջ և փոխ էր տալիս հարևաններին: Եվ որդին մորն ասաց, թե ինչո՞ւ ես այդպես ջուր լցնում կաթի մեջ և փոխ տալիս հարևաններին: Մայրն ասաց. «Որդի, մեր կաթը քիչ է, նրա համար եմ անում, որ մեր կաթը մի քիչ ավելի լինի, որ ձմեռը մեկ թացան լինի»:

Իսկ մի օր, երբ որդին այծերին արոտ էր տարել. երկնքում ծնվեց մի փոքր ամպ և անձրև եկավ և հեղեղ եկավ և այծերը սրբեց լցրեց գետը: Որդին տուն եկավ արևով և դատարկ և ձեռքին միայն փայտը: Մայրն ասաց. «Որդի ո՞ւր են այծերը և ինչո՞ւ դու այսօր արևով եկար»: Որդին ասաց. «Մայրիկ, այն մի չերեփ ջուրը, որ խառնում էիր կաթին և փոխ տալիս հարևաններին, հավաքվեց և հեղեղ դարձավ և եկավ մեր այծերը տարավ լցրեց գետը»:

## ԵՐԿՈՒ ՆԿԱՐԻՉ

Մի ոմն թագավոր շինեց գեղեցիկ դարբաս և կամեցավ պարդարել այնպիսի նկարներով, որոնց նման ոչ մի տեղ չէր եղել: Եվ ընտրեց երկու նկարիչների և մեկին տվեց մի պատը, մյուսին՝ մյուս պատը և նրանց միջև վարագույր քաշեց: Եվ երբ նկարիչներն ավարտեցին իրենց գործը, թագավորը եկավ, որ տեսնի նրանց գործը և տեսավ, որ մեկը նկարել էր շատ գեղեցիկ պատկեր և շատ հավանեց: Իսկ մյուսը բնավ ոչինչ չէր նկարել. նա պատը շատ գեղեցիկ սարքել էր և կոկել հայելուց ավելի լավ: Երբ թագավորը տեսավ, որ չէր նկարել, այլ միայն կոկել էր, պարմացավ և ասավ. «Դու ի՞նչ ես արել»: Նա ասաց. «Ես ցույց կտամ իմ գործը»: Եվ ապա վեր քաշեց միջի վարագույրը և երբ լույսը ծագեց և լուսավորեց կոկած պատը, այն ժամանակ մթնեց նկարապարդ պատը, որովհետև հայելու մեջ երևում էին այն բոլոր պատկերները, որ նկարված էին մյուս պատի վրա: Եվ թագավորն ասաց. «Այս մյուսից գեղեցիկ է»:

## ԱՌՅՈՒԾ ԵՎ ԱՂՎԵՍ

Մի առյուծ կորյուն ծնեց և հավաքվեցին կենդանիները կորյունին տեսնելու և ուրախանալու: Աղվեսն եկավ 'ւ հանդեսի ժամանակ, բազմության մեջ առյուծին նախատեց բարձրաձայն և անարգեց, թե այդ է քո կորությունը, որ ծնում ես միայն մի կորյուն և ոչ բազմաթիվ: Առյուծը հանդարտաբար պատասխանեց և ասաց. «Այո, ես ծնում եմ մի կորյուն, բայց առյուծ եմ ծնում և ոչ քեզ նման աղվես»:

# ԱՌՅՈՒԾ ԵՎ ԳԱՅԼ ԵՎ ԱՂՎԵՍ

Առյուծն և գայլն և աղվեսն եղբայրներ եղան և որսի ելան և գտան մի խոյ, մի ոչխար, որ է մաքի և մի գառ: Ճաշի ժամին առյուծն ասաց գայլին. թե բաժանիր մեր մեջ այդ որսը: Եվ գայլն ասաց. «Ով թագավոր, աստված արդեն բաժանել է՝ խոյը քեզ, մաքին ինձ և գառն աղվեսին»: Եվ առյուծն բարկանալով, ապտակ պարկեց գայլի ծնոտին և դուրս թռան գայլի աչքերը և նա նստեց և դառն լաց եղավ: Եվ դարձյալ ասաց առյուծն աղվեսին, թե բաժանիր ոչխարները մեր մեջ: Եվ աղվեսն ասաց. «Ով թագավոր, աստված արդեն բաժանել է՝ խոյը քեզ՝ ճաշին, մաքին քեզ՝ հրամենքին և գառը քեզ՝ ընթրիքին»: Եվ առյուծն ասաց. «Ով խորամանկ աղվես, քեզ ո՞վ սովորեցրեց այդպես ճիշտ բաժանել:

Եվ աղվեսն ասաց. «Ինձ սովորեցրին գայլի աչքերը, որ դուրս թռան»:

# ԳԻՆԻ

Մի թագավոր մի որդի ուներ և հրաման արեց նայիպներին, թե ամեն օր ձեպանից մեկը թող տանի իմ որդուն և պատվի: Եվ տանում էին:

Եվ մի օր մի նայիպ պատվելու էր տարել թագավորի որդուն և երեկոյան նրան տարավ թագավորի տունը և ինքը գնաց: Թագավորի տղան խիստ գինով էր և հարբած դուրս եկավ, ընկավ աղբանոցը և մեռավ: Եվ թագավորը հրամայեց, թե իմ իշխանության ներքո ինչքան այգի կա՝ փակեք և կարասները կոտրատեք: Եվ այդպես արին:

Եվ մի այրի կին մի որդի ուներ և այրի կինը պահեց յուր հնձանը և գինին և ամեն առավոտ և երեկո հացի վրա երկու թաս գինի էր տալիս որդուն: Եվ այրի կնոջ որդին մի գիշեր դուրս եկավ, սպանեց թագավորի առյուծին և թագավորն առավոտյան հրամայեց, թե ով որ սպանել է իմ առյուծին, եթե գա և ինձ պատմի՝ նրան չեմ պատժի: Եվ եկան այրի կինը և նրա որդին: Թագավորը նրան հարցրեց, թե ինչպես սպանեցիր առյուծին: Եվ նա ասաց, թե գիշերով դուրս եկա, հանդիպեցի առյուծին

և սպանեցի: Եվ մայրն ասաց, թե նրան գինով է սնուցել և պատմեց, թե ինչպես է գինով սնուցել:

Եվ թագավորը հրաման արձակեց, թե այգի տնկեք և գինին այնպես խմեք, որ առյուծ սպանեք և ոչ թե աղբանոցում մեռնեք:

## ԻՄԱՍՏՈՒՆ ԱՎԱԳ ԷՇ

Շատ էշեր գնում էին արքունի գործով և նրանց մեջ կար մի ավագ էշ՝ իմաստուն և մեծ, քան մյուսները: Եվ ամենքը նրան պատվում էին որպես հայր և առաջնորդ: Եվ ահա բարձրանում էին մի սար և նա խառանչեց և գոռաց սաստիկ ահագին. հետևի կողմից մեծամեծ ձայթյուն արձակեց: «Ով պատվական հայր, քո առջևի ձայնից բոլորս ունենք, իսկ ի՞նչ էր այն ահագին ձայթյունը, որ քո հետևի կողմից եղավ. աղաչում ենք, ասա մեզ»:

Եվ նա ասաց. «Ով իմ որդիներ, ձեր առաջ սուտ չեմ երդվի և ճշմարիտ կասեմ, որ առջևի ձայնի կորուսթյունից ընավ չեմ կարող իմանալ, թե ուրիշ ինչ ձայթյուն է ելնում իմ հետևի կողմից»:

## ՄԻԱՄԻՏ ԳՈՂԵՐ

Երկու գող բարձրացան մի մեծատան կտուր և կամեցան երդով վայր իջնել և գողություն անել: Եվ լուսնկա էր: Եվ մեծատուն մարդն իմացավ, որ գողերը երդիկի մոտ են: Եվ կինը մարդուն ասաց, թե այս ամեն զանձերը և ոսկին և կերպասը քեզ որտեղի՞ց են: Եվ մեծատուն մարդն ասաց.

«Գնում էի գողության, մեծատուն մարդկանց երդիկով իջնում էի և լուսնկա էր, ինչպես այժմ և լուսնի շողերը երդիկից ներս էին ընկնում, ինչպես այժմ և ես գրկում էի շողերի սյունը և վայր էի իջնում և այնպիսի մի բան էի ասում, որ ինչքան գեղեցիկ կերպաս կար այդ տանը, երևում էր ինձ և կապում էի լուսնի շողերին և վեր բարձրանում: Եվ այս ամենն այդպես եմ վաստակել»:

Երբ գողերն այդ բանը լսեցին, խիստ ուրախացան և հավատացին այդ ցնորամիտ բանին և լուսնի շողերը գրկելով երդից վայր ընկան և ջարդվեցին:

# ԵՂԵԳՆ ԵՎ ԾԱՌԵՐ

Մի թագավոր զբոսանքի ելավ շրջելու լեռներում և հովիտներում: Եվ տեսավ, որ մեծամեծ ծառեր կային կոտրված և փշրված և միայն մի եղեգ կար՝ կանգուն անարատ: Եվ թագավորն ասաց. «Ով եղեգ, ասա ինձ, թե ինչպես հաստատուն ես մնացել, երբ մեծամեծ ծառերը փշրվել են»: Եվ եղեգն ասաց. «Ով թագավոր, երբ սաստիկ հողմ բարձրացավ, ծառերը հպարտությամբ հակառակ կանգնեցին հողմի դեմ և հողմը նրանց փշրեց, իսկ ես խոնարհվեցի հողմի կամքով և ահա կանգուն եմ»:

# ԻՄԱՍՏՈՒՆ ԶԻՆՎՈՐ

Մի ոմն իմաստուն զինվոր պատերազմ էր գնում և նա երկու ոտքով կաղ էր: Եվ զինվորներից մեկը նրան ասաց. «Ով ողորմելի, ու՞ր ես գնում: Քեզ իսկույն կսպանեն, որովհետև փախչել չես կարող»: Եվ նա ասաց. «Ով անմիտ, ես չեմ գնում պատերազմ փախչելու, այլ կանգնելու և կռվելու և հաղթելու»:

## ԹԱԳԱՎՈՐ ԵՎ ՕՁ

Կար մի թագավոր և ուներ նա մի սիրելի օձ, որ նրան ամեն օր բերում էր մի կարմիր դահեկան: Եվ թագավորն ունեցավ մի մանուկ, որին սնուցում էր գահի վրա և օձը նետում էր մանկան պարանոցով և այդպես խաղում էին օձն ու մանուկը: Եվ երբ մանուկը մեծացավ, մի անգամ խաղի ժամանակ սուրը հանեց և կտրեց օձի պոչը և գետին գցեց: Եվ պայրացավ օձը, թույնով կարկեց մանուկին և մանուկը իսկույն մեռավ և օձը գնաց օտար երկիր: Եվ երբ թագավորը եկավ և մանուկին օձի թույնից սևացած և մեռած տեսավ և օձի պոչը գետնին ընկած, իմացավ, որ յուր մանուկն է թրով կտրել օձի պոչը: Եվ սգաց որդուն, տարավ թաղեց գերեզմանոցում:

Եվ անցավ մի առ ժամանակ և թագավորը խնդրանքներ ուղարկեց այն օձի մոտ և ասաց. «Գիտեմ, որ առաջ իմ որդին է ծռություն արել. նա կտրել է քո պոչը, ապա դու կծել ես նրան: Ինչ որ եղավ՝ եղավ և իկուր գնացիր: Արի և մենք կլինենք առաջվա նման իրար սիրելի և միասին կապրենք»: Իսկ օձը պատասխան տվեց և ասաց.

«Այդպես չէ, քանի որ ես պիտի նայեմ իմ պոչի վրա, իսկ դու քո որդու գերեզմանին, ուրեմն մեր միջից թշնամությունը չի վերանա: Լավն այն է, որ դու և ես իրարից հեռանանք, որպեսզի այլ ուրիշ մեծագույն չարիք չծնվի մեր մեջ»:

# ԿՏԱԿ ՎԱՄՆ ԳԱՆՁԻ

Մի իմաստուն և աղքատ մարդ ուներ ծույլ որդիներ: Մահվան ժամին նա կանչեց որդիներին և ասաց. «Ով զավակներ, իմ նախնիները շատ գանձ են թաղել մեր այգում և ես ձեզ ցույց չեմ տա նրա տեղը: Այդ գանձը կգտնի նա, ով շատ աշխատի և խոր փորի»: Եվ հոր մահից հետո որդիները սկսեցին աշխատել մեծ եռանդով և խորագույն էին փորում, որովհետև յուրաքանչյուրն աշխատում էր, որ ինքը գտնի գանձը:

Եվ այգին սկսեց աճել և զորանալ և առատ բերք տվեց և նրանց հարստացրեց գանձերով:

## ՈՒՂՏ ԵՎ ԳԱՅԼ ԵՎ ԱՂՎԵՍ

Ուղտը և գայլը և աղվեսը եղբայրներ եղան և ճանապարհ ընկան և ճանապարհին գտան մի բլիթ և հաց և միմյանց ասացին, թե ով ավագ է, թող նա ուտի: Եվ սկսեցին ասել իրենց տարիքը: Աղվեսն ասաց. «Ես այն աղվեսն եմ, որի անունը Ադամը դրեց»: Գայլն ասաց. «Ես այն գայլն եմ, որին Նոյը տապանին առավ»: Եվ ուղտը տեսնելով, որ նրանք իրենից ավագ դուրս եկան և հացը պիտի առնեն, հացը բերանն առավ բարձրացնելով ասաց. «Մի՞թե ես երեկվա տղան եմ, որ այսչափ մեծացրել եմ իմ ծրունքները»:

Եվ սկսեց հացն ուտել: Իսկ աղվեսը և գայլը ցատկելով նրա շուրջը ոչինչ չկարողացան անել և փախան:

## ԿՌՈՒՆԿ ԹԱԳԱՎՈՐ ԹՌՉՈՒՆՆԵՐԻ ԵՎ ԷՇ

Հավաքվեցին թռչունները և ասացին, թե որի ձայնը կորավոր է, նրան մեջ թագավոր դնենք, որպեսզի պատերազմի ժամին կանչի մեջ: Եվ կռունկը երկինք բարձրացավ և գոչեց. Նրան հավանեցին թռչունները և օծեցին թագավոր: Էշը եկավ և ասաց. «Այ, եթե ինձ ոտի տեղ անեիք, որ նրա փոխարեն ես բարձրանայի, դուք կլսեիք թե ում ձայնն է կորավոր»:

## ԵՂՆ ԵՎ ՁԻ

Եղը և ձին խոսեցին միմյանց հետ: Եղն ասաց. «Դու ո՞վ ես կամ ինչի՞ պետք ես»: Ձին ասաց. «Ես ձի եմ և ինձ թագավորները և իշխանները պարդարում են ոսկով և արծաթով և բազմում են ինձ վրա»: Եղն ասաց. «Ամբողջ աշխարհի բարեկեցությունն եմ ես, որովհետև ես եմ վաստակում և չարչարվում և հոգնում և ապա դու և քո թագավորն ուտում եք: Եվ բոլոր մարդիկ ուտում են իմ վաստակը և եթե չվաստակեմ, դու և քո թագավորն իսկույն կմեռնեք: Եվ դու երախտամոռ մի լինիր»:

## ՀԻՄԱՐ ԵՎ ՁՄԵՐՈՒԿ

Մի հիմար և միամիտ մարդ ուներ մի դահեկան և առնելով դահեկանը գնաց քաղաք մի էշ գնելու և շրջեց քաղաքում ու շուկայում և չգտավ մի դահեկանի էշ, ապա կրկին եկավ շուկա և տեսավ մի մեծ ձմերուկ և հիացմամբ հարցրեց. «Այս ի՞նչ է»: Եվ վաճառականներն իմացան, որ նա հիմար է և ասացին, թե ինդու էշի ձու է և կհանի ինդու մեծ էշ: Եվ ուրախանալով մարդը, տվեց դահեկանը և առավ ինդու էշի ձուն: Եվ վաճառականները նրան պատվիրեցին, թե ձեռքիդ պգույշ տար, թե չէ կկոտրվի և էշը միջից կփախչի: Եվ ձմերուկը ձեռքին մարդն սկսեց գնալ պառիվայր ճանապարհով և նրա ոտքը սայթաքեց, ձմերուկը ձեռքից դուրս պրծավ և գլորվեց խիտ անտառի մեջ և անտառից մի նապաստակ վազեց և սկսեց փախչել, իսկ մարդը կարծեց, թե ձուն կոտրվել է և ահա էշը եղել և փախչում է: Եվ հետևից վազելով կանչում էր նապաստակին և ձայն էր տալիս.

«Այ ինդու էշ... վայ ինձ, մի փախչիր. քուռի, քուռի խնայիր ինձ և վերադարձիր»:

# ԷՇԻՆ ԹՈՌ ԾՆՎԵՑ

Էշին ավետիս տվին՝ թե ցնծա և ուրախ եղիր և մեծ ընծա պարգևիր, որովհետև քեզ թոռ ծնվեց. «Վայ ինձ, բարեկամներ, եթե հարյուր թոռ էլ ծնվի, չեն թեթևացնի ծանրությունն իմ մեջքի բեռան»:

# ՀԱՅՐ ՈՒ ՈՐԴԻ

Մի մարդ աղջիկ առավ որդու համար և որդին ամուսնացավ աղջկա հետ և երբ միավորվեց նրա հետ, հիացավ ամուսնության գործի վրա և ուրախացավ և սկսեց հորը խրատել ամուսնության գործի մասին:

Եվ հայրն ասաց. «Ով որդյակ, ես ամուսնության գործով ծնեցի քեզ և այժմ դու՞ ես խրատում ինձ»:



## ՄԱՐԴ ԵՎ ԸՆԿՈՒՅԶ ԵՎ ՁՄԵՐՈՒԿ

Մի մարդ ընկույվի ծառի տակ ձմերուկ էր ցանել: Եվ պտուղի ժամանակ եկավ տեսավ մեծամեծ ձմերուկները և ծառին նայեց, տեսավ, որ ընկույվը մանր էր: Մարդն ասաց. «Տեր աստված, ինչ որ ստեղծել ես՝ ամենը կարգին է և մի բանի նման: Իսկ այս երկու պտուղը անկարգ են, բանի նման չեն»: Մարդն ասում էր, որ ընկույվի տեղ ձմերուկ պիտի լիներ ծառին և ընկույվը ձմերուկի թփի վրա: Եվ նա պառկեց ծառի տակ և նայեց ծառին և հանկարծ մի ընկույվ պոկվեց ծառից և շատ պինդ կպավ նրա ճակատին և ճակատը պատռեց և արյունը եկավ: Եվ մարդը վեր կացավ տեղից և աղաղակեց. «Տեր աստված, ինչ որ ստեղծել ես, ամենը կարգին է և կատարյալ և ով չհավանի քո ստեղծածը, նրա ճակատը իմից վատ լինի, որովհետև ընկույվի տեղ ձմերուկ լիներ, ինձ պիտի սպաներ»:

# ԵԿԵՂԵՑԻ ԵՎ ՋՐԱՂԱՑ

Եկեղեցին պարծեցավ յուր սրբությամբ և ասաց, թե «Ես եմ տաճար աստծու և դեպի ինձ են գալիս քահանաները և ժողովուրդը աղոթք մատուցանելու աստծուն և պատարագ, և հաշտվում է աստված աշխարհի հետ և մեղքերին թողություն է լինում»: Այն ժամանակ ջրաղացն ասաց եկեղեցուն. թե «Ինչ որ դու ասում ես, արդար է և ճշմարիտ, բայց դու իմ երախտիքը մի մոռանա, որ գիշեր-ցերեկ աշխատում եմ և դատում այն, ինչ որ ուտում են քահանաները և ժողովուրդը և ապա քեզ են գալիս աղոթելու և երկրպագելու աստծուն»:

## ԱՂՎԵՍ ԵՎ ՈՐՍՈՐԴ

Որսորդը շներով տառապում և նեղում էր աղվեսին։ Եվ աղվեսը դարձավ և ասաց. «Աղաչում եմ քեզ, ասա թե ինչո՞ւ համար ես ինձ նեղում»: Եվ որսորդն ասաց. «Որպեսզի հանեմ քո մորթին»:

Աղվեսը կանգնեց և ասաց. «Տեր աստված, փառք քեզ, որ սրա ուշադրությունը այս է: Իսկ ես կարծում էի, թե ինձ ուզում է նշանակել մեր գավառի հավաքած կամ թռչնոցի փառահայր»:

# ԻՇԽԱՆԱՎՈՐ ԵՎ ԻՄԱՍՏՈՒՆ

Կար մի աշխարհակալ իշխանավոր և նա ուներ մի խիստ գեղեցիկ տղա: Եվ իշխանավորն ասաց. թե գեղեցիկ աղջիկ կառնեմ, որ կին լինի իմ որդուն և ունենամ գեղեցիկ թոռներ՝ ժառանգ իմ գահի: Եվ գնաց բերեց մի գեղեցիկ հարս և դեռ թոռ չէր ունեցել, երբ որդին մեռավ և հարսը մնաց: Եվ ինքը կամեցավ հարսին առնել և հարցրեց իմաստուններին, թե «Կա՞ իրավունք» և նրանք ասացին, թե «չկա իրավունք, որ հայրն առնի հարսին»: Եվ չկամեցավ լսել նրանց և գտավ մի այլ իմաստուն, որ նրա սիրելին էր, և այդ իմաստունն ասաց իշխանավորին. «Աշխարհում յոթանասուն երկու ազգ կա և նրանցից ոչ մեկին չի հասնում այդ, բայց քեզ կհասնի: Եվ իշխանավորն ասաց, թե «Ինչու աշխարհի յոթանասուն երկու ազգին չի հասնում այդ, իսկ իրեն կհասնի»: Եվ իմաստունն ասաց. «Վախենում եմ պատճառն ասել, որովհետև կսպանես ինձ»: Եվ նա երդվեց չսպանել նրան, եթե պատճառն ասի:

Այն ժամանակ իմաստունն ասաց. «Որովհետև դու ամեն ազգից դուրս ես և քո վրա չկա իշխանություն և ինչ կամենաս կարող ես անել»:

## ԱՂՎԵՍ ԵՎ ԹՂԹԱՏԱՐ ԳԱՅԼ

Աղվեսը մի գրած թուղթ գտավ և տարավ գայլին և ասաց. «Այսչափ ժամանակ աշխատեցի և բարեխոս մարդիկ մեջ գցեցի և իշխանից քեզ համար թուղթ հանեցի, որ ամեն գյուղ՝ ուր հանդիպես, քեզ պիտի տա մի ոչխար: Եվ այդպես խաբեց գայլին և միասին գնացին մի գյուղ և աղվեսը նստեց բլուրի վրա և թուղթը տվեց գայլին։ Երբ գայլը գյուղի մեջ մտավ, վրա թափվեցին շները և մարդիկ, նրան գկեցին և գանահարեցին: Եվ արյունաթաթախ գայլը հազիվ ազատվելով հասավ աղվեսին: Եվ աղվեսն ասաց. «Ինչո՞ւ թուղթը ցույց չտվիր»:

Եվ գայլն ասաց. «Ցույց տվի, բայց գյուղում հապար շուն կար, որ գիր չգիտեր»:

## ԱՅՐԻ ԿԻՆ ԵՎ ԽՈՐԹ ՈՐԴԻ

Մի այրի կին ուներ մի կով և նրա խորթ որդին ուներ մի էշ: Եվ խորթ որդին գողանում էր կովի կերը տալիս էշին: Եվ այրի կինն աստծուն աղաչեց, որ աստված էշին մեռցնի: Բայց կովը մեռավ և այրին լաց եղավ և ասաց. «Ով աստված, միթե՞ չկարեցար էշը կովից տարբերել»:

## ԱՌՅՈՒԾ ԵՎ ՄԱՐԴ

Մի կորավոր առյուծ նստել էր ճանապարհին և տեսակ-տեսակ գազաններ այդ ճանապարհով գալիս էին դողալով և անցնում: Առյուծը հարցրեց նրանց. «Ինչո՞ւ եք փախչում և ո՞ւմ ահից եք պարհուրած փախչում»: Եվ նրանք ասացին. «Փախիր և դու, որովհետև ահա գալիս է մարդը»: Եվ առյուծն ասաց. «Ո՞վ է մարդը և ի՞նչ է նա և ի՞նչ է նրա ուժը և նրա կերպարանքը, որ փախչում եք նրանից»: Եվ նրանք ասացին. «Կգա, կտեսնի քեզ և քեզ վայ կլինի»:

Եվ ահա յուր հանդից եկավ մի հողագործ մարդ: Եվ առյուծն ասաց.«Միթե՞ դու ես այն մարդը, որ փախցնում է գազաններին»: Եվ նա ասաց. «Այո, ես եմ»: Առյուծն ասաց. «Արի կռվենք»: Մարդն ասաց. «Այո, բայց քո զենքերը քեզ հետ են, իսկ իմը՝ տանն են: Եկ նախ քեզ կապեմ, որպեսզի չփախչես, մինչև ես գնամ առնեմ իմ զենքը և ապա կռվենք»: Առյուծն ասաց. «Երդվիր, որ կգաս և ես կլսեմ քեզ»: Մարդն երդվեց և առյուծն ասաց. «Հիմա կապիր ինձ և գնա, շուտ դարձիր»: Մարդը հանեց պարանը և առյուծին

ամուր կապով կապեց կաղնու ծառին և ծառից կտրեց մի ճիպ և սկսեց զարկել առյուծին:

Եվ առյուծը գոչեց. «Եթե դու մարդ ես, ավելի խիստ և անխնա զարկիր իմ կողերին, որովհետև այս խելքին այդպես է վայել»:

## ՄՈՒԿՆ ԵՎ ՈՒՂՏ

Մի մուկ հպարտացավ: Կորավ նրա իմաստությունը և նրա միտքը լցվեց հպարտությամբ: Մուկը գնաց ուղտի մոտ և ասաց ուղտին.«Ինձ հրաման տուր քո կճղակի մեջ բույն դնեմ և այնտեղ բնակվեմ»:Եվ ուղտըն ասաց. «Քեզ վնաս կլինի, որովհետև հանկարծ կոխ կտամ քեզ և կմեռնես»: Մուկն ասաց. «Քո սըմբակը կակուղ է և ինձ վնաս չի լինի»: Ուղտն ասաց. «Քո արյունը քո գլուխը»: Եվ մուկը ուղտի կճղակի մեջ շինեց իր բույնը: Մի անգամ ուղտը ծանր բեռան տակ քայլեց և հանկարծակի կոխ տվեց մուկին: Եվ մուկը ճչաց և նրա փորից դուրս եկավ ճրագուն, որովհետև մուկը գեր էր:

Այդ տեսնելով ուղտն ասաց. «Ահա եղբայր, հենց այդ էր նեղում քեզ, որ դուրս ելավ քո փորից»:

# ԱՄԵՆԱԳԵՏ ՄԱՐԴԸ

Մի թագավոր կամեցավ աշտարակ շինել և աշտարակը քանի ցերեկը շինում էին, գիշերը փուլ էր գալիս: Եվ նա հավաքեց յուր գիտուններին և պատճառը հարցրեց: Նրանք ասացին. «Եթե կամենում ես, որ այլևս չփլչի, դու գտիր մի ագետ մարդ, որից ավելի ագետ մարդ չլինի և նրան կենդանի դիր պատի մեջ և պատը թող շարեն, և այլևս չի փլչի: Եվ թագավորն ասաց. «Այդ բանի ընտրությունը ևս դուք արեք և գտեք մի ագետ մարդ, որին կենդանի թաղեն պատի մեջ»:

Եվ գիտունները նստեցին միասին որոշելու, թե ի՞նչ տեղ կարող են գտնել ագետ մարդ և մեկն ասաց. «Ձկնորսն է ագետ, քանի որ նրա առն ու տալը մարդու հետ չի, այլ ջրի և ձկների»: Իսկ ոմանք ասացին. իշապանը, որ իշու հետ է լինում և իր ողջ կյանքն անց է կացնում գրաստի հետ, շրջելով լեռ և անտառ: Ոմանք ծովավարին ասացին, իսկ ոմանք հովվին, որ ամառ-ձմեռ ոչխարների հետ շրջում է լեռներում, չի մտնում գյուղ և քաղաք: Եվ հավանություն արին և կամեցան հովվին բերել:

Այն ժամանակ գիտուններից մի ումն ասաց. թե «Մեր թագավորը մի հովիվ ունի, որ ծնվել է սարում

ոչխարների մեջ և մնվել է այնտեղ և յուր կյանքում ոչ գյուղ է մտել, ոչ քաղաք»: Եվ ուղարկեցին տանը ծիավոր, որպեսզի մարդուն բերեն: Եվ ծիավորները գնացին գտան հովվին, որ կթում էր ոչխարը և ողջունելով ասացին... «Թագավորը քեզ կանչում է»: Հովիվըն ասաց. «Ես իմ կյանքում ոչ քաղաք եմ գնացել, ոչ էլ գյուղ. ինձ ինչո՞ւ է կանչում»: Իսկ նրանք խոնարհամտությամբ ասացին. «Չենք իմանում»: Իսկ հովիվը պատվեց նրանց, գառ մորթեց և պանիր բերեց և ուրախացրեց նրանց և երդմամբ հարցրեց կանչելու պատճառը: Եվ նրանք ասացին, թե այս պատճառով է քեզ կանչում, որովհետև թագավորի գիտունները ասել են, որ մի տգետ մարդու պետք է դնել պատի մեջ, որպեսզի պատը չեն մնա:

Այն ժամանակ հովիվը ծիծաղեց և ասաց.

«Հիմարը և տգետն այն գիտուններն են, որ այդպիսի ընտրություն են արել»: Եվ մի ոչխար բերելով ասաց. «Ես ձեզ ցույց կտամ իմ տգիտությունը»: Եվ ասաց. «Այս ոչխարը երկու գառ ունի փորում, մինը էգ է, և մյուսը՝ որձ, մեկի գլուխը սև է և մյուսինը՝ սպիտակ»: Եվ ոչխարը մորթեց և գառները փորից հանեց և այնպես էր ինչպես ասաց: Եվ մի այլ ոչխար բերելով ասաց. «Այս ոչխարը մեկ գառ ունի փորում, մարմինը սև է, գլուխն սպիտակ և ինքը որձ»: Եվ մորթեցին տեսան այնպես: Եվ հովիվն ասաց: «Ոչխարի այս երկու հոտը, որ կա ձեր առաջ, ամենին գիտեմ, թե որն է ծնելու և որն է ստերջ և որն է որձ ծնելու և որը՝ էգ և որը սև կամ սպիտակ և որը սև

սպիտակ պուտերով: Ձեր գիտունները կարո՞ղ են այդ իմանալ»: Ձիավորներն ասացին. «Ոչ ամենևին»: Հովիվն ասաց. «Ուրեմն իմացեք, որ ես չեմ այն հիմարն ու տգետը, որին դուք փնտրում եք: Իսկ եթե կամենաք, ես ցույց կտամ տգետ մարդուն: Թագավորը թող յուր նայիպին բռնի թալանի և ինչ ունի ամենն առնի և քաղաքի հրապարակում նրան կախի և չարաչար տանջի, որպեսզի բոլոր քաղաքացիները տեսնեն. ապա նայիպին թող տանեն թաքցնեն և ասեն, թե նրան սպանեցին: Եվ երեք օր քաղաքում թող կանչեն, թե ինչ մարդ որ կգա և հանձն կառնի նայիպի գործը, նրա ամեն ապրանքն այդ մարդուն կտանք և նրան կնշանակենք թագավորի նայիպ: Այն մարդը, որ կտեսնի այդ խաղքը և կլսի ինչ որ արին նայիպի գլխին և առաջանալով կասի թե ես եմ, ուզում եմ լինել նայիպ, այն մարդն է հիմար և տգետ, նրան բռնեցեք և կենդանի դրեք պատի մեջ, որպեսզի այլևս չփչի և չեն մնա»:

Իսկ նրանք եկան և թագավորին պատմեցին և թագավորն արեց այնպես, ինչպես հովիվն ասել էր և մինչդեռ քաղաքում կանչում էին, թե ով գա և հանձն առնի նայիպի գործը և իշխանությունը, նա կստանա նրա ապրանքը և հողը, այն ժամանակ մոտ վազեց մի ջրմի և թոնի մարդ և ասաց, թե ես հանձն կառնեմ այդ գործը: Եվ նրան հարցրին, թե տեսա՞ր ինչ արին նայիպի գլխին: Նա ասաց. «Այո, տեսա»:

Եվ իսկույն առան նրան և տարան, կենդանի դրին պատի մեջ և սպառը հաստատուն մնաց:

## ԱՐՎԵՍՏ ԿՆՈՋ

Մի մարդ շրջում էր երկրե երկիր և կինն ինչ հնար որ աներ, նա գրում էր թղթի վրա: Եվ նա երեք մեծ բեռներ շինեց և դեռևս գնում էր և թղթի վրա գրում կնոջ հնարը, որով կինը խաբում էր մարդուն: Եվ նա մտավ մի քաղաք և քաղաքի դռան մոտ կար մի խիստ հնարագետ կին և այդ կինը մարդուն ասաց. «Բարի եկար»: Եվ կինը մեծարեց նրան և տուն տարավ, կարծելով, թե այն շատ ունի և կերպաս և ոսկի և արծաթ: Երբ երեկոն եղավ, կինն ասաց այն մարդուն. «Բեռներդ քո ի՞նչ է, գուցե իմ պետքերի համար մի բան առնեմ»: Եվ նա ասաց. «Ոչինչ չունեմ ծախու»: Եվ կինն ասաց. «Ապա այդ, որ ունիս, ի՞նչ է»: Եվ նա ասաց. «Կնոջ հնար է, ինչ կին, որ հնար է արել, շրջել եմ և գրել և բարձել և եկել եմ այստեղ, որ ուրիշ հնար գրեմ»: Եվ կինն ասաց. «Բարի եկար»:

Եվ այն ժամանակ կինը կամեցավ բեռներն այրել և հնարն իմանալ: Տան մեջ կար մի փուռ, որ կտաներ երեք բեռ թուղթ և կինը բարկ վառեց

փուռը և ձուկը տապակեց և դրեց ճյուրի առաջ: Եվ ինքը վեր կացավ, դռները պինդ փակեց և խիստ բարձր ձայնով ճչաց հավար կանչելով և եկան դրացիները սուսերներով, բիրերով և բախեցին տան դուռը: Եվ կինն ասաց այն մարդուն. «Եթե կամենում ես, որ քեզ սպանել չտամ, թղթերը տուր այրեմ փռի մեջ. իսկ եթե ոչ՝ կասեմ, որ այս մարդը բռնաբարեց ինձ և քեզ սպանել կտամ»:

Եվ մարդը բեռները տվեց նրան և կինը երեք բեռն այրեց փռի մեջ և տան դռները բաց անելով ասաց. «Քանի տարի է իմ հորեղբոր որդին գնացել էր և ահա եկավ և ես նրան ձուկ տվի ուտելու և փուշը բկի մեջ մնաց և կռռով ապատվեց մահից»: Եվ եկան տեսան, որ ձուկը նրա առջև էր և գնացին:

## ԳԱՅԼ ԵՎ ԱՂՎԵՍ ԵՎ ՋՈՐԻ

Գայլն և աղվեսն և ջորին եղբայր եղան և գնացին. երբ սովեցին և որսի չհանդիպեցին, ասացին. «Եկեք ուտենք նրան, ով տարիքով փոքր է»:

Այսպես ասացին գայլը և աղվեսը, որովհետև կամենում էին ջորուն ուտել: Եվ գայլին հարցրին, թե ո՞ր տարվա գայլն ես և նա ասաց. թե ես այն գայլն եմ, որին Նոյը տապանն առավ: Եվ աղվեսն առաջ եկավ և ասաց. «Օ՜, դու տասը ազգով ինձանից փոքր ես, և ես այն աղվեսն եմ, որին աստված ստեղծեց»: Եվ ջորին եկավ և ասաց. «Իմ ծննդյան թվականը գրված է սմբակիս վրա. եկեք, կարդացեք տեսեք քանի տարեկան եմ»: Եվ ոտքը բարձրացրեց: Աղվեսն ասաց գայլին. «Գիտեմ, որ դու դպրոցում եղել ես, արի գիրը կարդա»: Եվ գայլը հավատաց և գնաց կարդալու: Եվ ջորին ասաց. «Առաջ արի, որովհետև գիրս մանր է»: Եվ նա առաջ գնաց և ջորին սաստիկ ուժով պարկեց գայլի ճակատին և ջախջախեց և գայլը գնաց կողկոնձա-

լով: Եվ աղվեսն ասաց գայլին. «Արի մի տող էլ կա, այն էլ կարդա»:

Գայլն ասաց. «Ես ինչ գիտեի գիրը. մենք ապգե ապգ մտագործ ենք և մտագործի որդի»:

# ԱՆԶԳԱՄ ԿԻՆ

Մի մարդ արտում նստել էր քարի տակ և քնեց մի պահ և պառկեց և չէր ուզում տուն գնալ: Եվ հանկարծ եկան երկու ծնծղուկ նստեցին քարին վրա և մարդուն հարցրին, թե ինչո՞ւ նա տրտում է: Եվ որովհետև մարդն ասաց որ տրտում է, որովհետև աղքատ է: Ծնծղուկներն ասացին:

«Կխոստանա՞ս երբեք չասել ոչ ոքի, եթե քեզ ոսկու տեղ ցույց տանք»: Եվ մարդը խոստացավ և երդվեց և նրանք ասացին. «Այդ քարի տակ յոթ կարաս ոսկի կա թաղած, հանիր և տուն տար և եթե ասես մեկին, թե որտեղից է ոսկին, իսկույն կմեռնես»: Եվ մարդն ուրախացավ, գնաց յուր տուն, բրիչն առավ և գիշերով եկավ գաղտնի հանեց ոսկին և տարավ յուր տուն, սկսեց փարթամանալ և շքեղ տներ շինել, ունեցավ ձիեր և ջորիներ և եզներ և ոչխարների հոտեր և այլ ամենայն ինչ, որ վայել է աշխարհ սիրողին:

Եվ մի օր եզն ասաց մյուս եզան, թե «Ես ի՞նչ անեմ, որովհետև ամեն օր անխնա լծում են ինձ»: Էշը, որ նրան մոտիկ էր, ասաց. «Վաղը սուտ հիվանդ եղիր և հայա: Երբ այդ տեսնեն կխղճան և այլևս քեզ

չեն լծի»: Եվ այս լսելով մարդը ծիծաղեց և մշակներին ասաց, թե այսօր չէ վաղը, այսինչ նշան էշը հիվանդ եղան տեղ լծեք: Մշակն առավոտյան էշը տարավ և լծեց մինչև իրիկուն և երբ տուն եկավ, էշն ասաց հիվանդ եզան. «Ողորմելի եզնուկ դու չգիտես, իր արտում ինչ էին ասում. ասում էին, թե այն հիվանդ եզը վաղը մորթենք, որ չսատկի»: Լսիր ինձ և ոտքի կաց և առողջ եղիր, գնա լուծդ քաշիր, որ քեզ չմորթեն: Քեզ համար ավելի լավ է բանել, քան կյանքից զրկվել»: Այսպես ասաց էշը, որպեսզի այլևս նրան չտանեն լծելու, որովհետև այդ օրը շատ էր աշխատել: Եվ այս լսելով մարդը նորից ծիծաղեց:

Այն ժամանակ նրա կինն ասաց.«Ով մարդ, մենք աղքատ էինք և հանկարծ հարստացանք և այսչափ ապրանքի և բերքի տեր եղանք և ժամ առ ժամ կենում և ինքդ քեզ ծիծաղում ես, ինձ ինչու՞ չես ասում, թե որտեղի՞ց է այս ամենը և դու ինչո՞ւ ես ծիծաղում»: Մարդն ասաց. «Ով դու կին, եթե ասեմ իսկույն կմեռնեմ, դրա համար չեմ ասում»: Իսկ կինը հանդգնեց և ասաց. «Ճար չկա, պետք է ասես»: Իսկ նա չէր ուզում ասել, բայց կինը նրան խիստ նեղեց և ասաց. «Պետք է ասես ինձ, եթե մեռնես էլ: Եթե ոչ՝ ես ինձ կսպանեմ»: Եվ մարդն անճարացավ և ասաց. «Ով կին, հավատա ինձ, որ առանց տարակուսանքի կմեռնեմ, թե որ ասեմ. երբ թույլ չես տալիս, երեք օր սպասիր, մատաղ անեմ, քահանաներին և աղքատներին կերակրեմ, ապա քեզ ասեմ և մեռնեմ»: Եվ չար կինը հազիվ հանձն առավ երեք օր սպասել: Եվ մարդը

մորթեց շատ ոչխարներ և գառներ և կանչեց քահանաներին, կարգավորներին և աղքատներին և նստեցին ճաշի և մինչդեռ ուտում էին և ըմպում, այն մարդն սպասում էր: Եվ մարդն ուներ շան լակոտ, որ տան մեջ նստել էր լի տրտմությամբ և սգով, նույնիսկ արտասուք էին թափվում նրա աչքերից: Եվ իսկույն հանկարծակի եկավ աքլորը հպարտ և խրոխտալով և ներս մտավ և նրա հետ կային քսան երեսուն հավ աջից և ձախից: Շան լակոտն սկսեց աքլորին ասել. «Ով լիրբ անաղուհաց, ի՞նչ ես խրոխտացել և տեսակ-տեսակ ձայն ես հանում. չգիտես որ մեր տերը վաղը՝ յուր գաղտնիքը պիտի կնոջն ասի և մեռնի: Իսկ դու լալու փոխարեն ուրախ ես»: Աքլորն ասաց. «Զվերս ի վայր թե կմեռնի. ես որ նրա ծառան եմ, քսան երեսուն կին ունեմ և նրանց պավթ եմ արել, իսկ նա չի՞ կարող մեկին իր հրամանով պահել»: Շան լակոտն ասաց. «Ի՞նչ անի անզգամ կնոջը»: Աքլորն ասաց. «Երբ ամենքը վեր կենան ժատաղից, թող առնի երեք չորս փայտ, դուռը փակի և կնոջն ասի՝ արի քեզ ասեմ գաղտնիքը և նրան բռնի մերկացնի և կապի մի սյունից և այնքան ծեծի նրա կողերին և այլ տեղերին, որ ողջ տեղ չմնա, ամենը կապուտկի և ասի, թե չար կին, լավ է, որ դու մեռնես, քան թե ես և դռնից հանելով նրան դուրս վանի, ասելով՝ գնա կորիր ես այլ կին կառնեմ և քեզ չեմ ուզում»:

Եվ աքլորից լսելով այդ բարի խրատը, այն մարդը դարձյալ ծիծաղեց: Եվ անզգամ կինը տեսնե-

լով այդ, ամբոխի մեջ մոտեցավ նրան, չամաչելով ոչ մարդկանցից և ոչ քահանաներից և մարդուն ասաց. «Այժմ ինչո՞ւ ծիծաղեցիր, ասա ինձ և պատմիր, թե ինչպես հարստացար»: Եվ մարդն աղաչեց. «Մի քիչ համբերիր, թող հյուրերը գնան և ես քեզ ասեմ, այժմ ամոթ է նրանց առաջ բան ասել»:

Եվ երբ ամենքը գնացին, ընտանիքը դուրս հանեց և դուռն ամուր փակեց և ըստ աքլորի խրատի՝ ձեռքն առավ կնոջը, ջարդեց ամեն ոսկորները և դուրս արեց: Իսկ կինը կղզալով նրա ոտքն ընկավ և լալով և աղաչում էր ասելով «Աստծու սիրուն ինձ բան մի ասա և ամեն օր այսպես ծեծի, միայն ինձ դուրս մի անի և քեզնից մի հեռացրու, որպեսզի աշխարհում խաղք չլինեմ»:

Եվ այսպես մահից ազատվեց մարդը աքլորի խրատով:

## ԴՐԱԽՏ ԵՎ ԳԵՂՋՈՒԿ ՄԱՐԴ

Մի գեղջուկ մարդ արը շալակին բարձրանում էր դժվար սարով և տոթ ժամանակ էր: Եվ շատ հոգնեց մարդը և բեռը վայր դնելով սկսեց բամբասել Ադամին և Եվային, թե ինչո՞ւ նրանք անհամբերությամբ դուրս եկան դրախտից: Եվ իսկույն երևաց հրեշտակը և նրան ասաց. «Եթե քեզ դրախտ տանեմ, դու կհամբերե՞ս»: Եվ գեղջուկն ասաց. «Ե՞րբ լինի այդ»: Եվ հանկարծ քուն իջավ նրա վրա և տեսավ, որ դրախտն է ընկել և շատ ուրախացավ: Եվ ապա տեսավ, որ դրախտի մեջ մարդիկ կտրատում են դեռաբույս ծառերը և չհամբերելով ասաց. «Այդ ի՞նչ մարդիկ եք, որ չոր ծառերը թողած, կոտրատում եք կանաչ ծառերը»: Եվ աչքերը բաց արեց, տեսավ, որ դարձյալ նստել է արի բեռան մոտ և սկսեց դառն արտասվել: Եվ գեղջուկ մարդը նորից տեսավ հրեշտակին և ասաց. «Այլևս չեմ խոսի»: Եվ նա նորից դրախտ ընկավ և տեսավ, որ մարդիկ կտրած ճյուղերը և փայտը շալակ են կապել և չեն կարողանում շալակել, բայց դեռ դարսում են ճյուղը և փայտ: Եվ չհամբերեց և ասաց. «Ով անխելքներ,

թեթևացրեք ձեր բեռը, որ կարողանաք շալակել»: Եվ գեղջուկ մարդը նորից կարթնեց դժվար սարի վրա և սկսեց արտասվել և հրեշտակը երրորդ անգամ նրան դրախտ տարավ և նա տեսավ մի մեծ քար, որից կապել էին տասն երկու լուծ եզ և ամեն մեկը յուր կողմն էր քաշում և քարը չէր շարժվում: Եվ մարդը դարձյալ չհամբերեց և կանչեց. «Ով հիմարներ, մի կողմի վրա քաշեք և միասին քաշեք, որ քարը տեղից շարժեք»:

Եվ գեղջուկ մարդն ասաց. «Լավ է ես իմ աղը շալակեմ»: Եվ բարձրացավ դժվար սարով:

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Վարդան Այգեկցի

ԱՌԱԿՆԵՐ

Խմբագիր՝ Հ. Մ. Կարապետյան
Նկարիչ և գեղ. խմբագիր՝ Ջ. Ե. Գասպարյան
Տեխ. խմբագիր՝ Ս. Մ. Սիմոնյան
Վերստուգող սրբագրիչ՝ Է. Գ. Պողոսյան

Միջին և բարձր տարիքի
երեխաների համար

Հանձնված է շարվածքի 12/IV 1972 թ.։
Ստորագրված է տպագրության 15/IX 1972 թ.։ Թուղթ՝ տպագր. № 1, $70 \times 90^{1}/_{32}$, հրատ. 0,95 մամ. տպ. 1,75 մամ. = 2,04 պայմ. մամ։ Տպաքանակ՝ 25.000։ Գինը՝ 3 կ.։ Պատվեր 2307։ ՎՖ 07670 «Հայաստան» Հրատարակչություն, Երևան-9, Տերյան 91։

ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության վարչության № 1 տպարան, Երևան, Ալավերդյան փող. № 65։